Պրոլետարնե՛ր բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ




№ 23 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1954

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿՊ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին։ Հեռախոս 2—52—78։



# ԼԵՆԻՆԻ ԳՈՐԾԻ ՄԵԾ ՇԱՐՈՒՆԱԿՈՂԸ

Դեկտեմբերի 21-ին սովետական ժողովուրդը նշում է Վ. Ի. Լենինի հավատարիմ աշակերտ և զինակից, Լենինի գործի մեծ շարունակող Իոսիֆ Վիսսարիոնովիչ Ստալինի ծննդյան յոթանասունհինգամյակը։

Ստալինի անունը անսահմանորեն թանկ է սովետական մարդկանց և ամբողջ աշխարհի աշխատավորների համար։ Նրա ամբողջ կյանքը նվիրվեց բանվոր դասակարգին ու բոլոր աշխատավորներին շահագործողների լծից ազատագրելու մեծ գործին, կոմունիզմի հաղթանակի համար մղվող պայքարի գործին։ Ցարիզմի և կապիտալիզմի դեմ մղված կատաղի պայքարում նրան ոգեշնչում էին մարքսիզմ-լենինիզմի մեծ գաղափարները, որոնք բանվոր դասակարգին ցույց տվեցին շահագործումից ազատագրվելու, իշխանությունը նվաճելու և սոցիալիզմը կառուցելու ուղին։ Ի. Վ. Ստալինը խորապես հավատում էր ժողովրդին, բանվորների և գյուղացիների ուժերին

անսպառ եռանդին ու ստեղծագործական նախաձեռնությանը և իր ամբողջ գործունեության մեջ հենվում էր մասսաների վրա, նրանց մեջ տեսնում պատմության իսկական կերտողներին։

Ի. Վ. Ստալինը մշտապես հանդես էր գալիս որպես Վ. Ի. Լենինի հավատարիմ և արժանավոր աշակերտը։ Ամեն ինչում և ամենուրեք նա մնում էր համոզված լենինյան, լենինյան գաղափարների կայուն հետևորդ ու պաշտպան։ Հանձին Լենինի նա տեսնում էր մեր պարտիայի հանճարեղ ստեղծողին և առաջնորդին, բարձր տիպի ղեկավարի, պայքարում վախ չիմացող լեռնային արծվի։ Լենինի հետ միասին և նրա ղեկավարությամբ Ի. Վ. Ստալինը պայքարում էր նոր տիպի պարտիայի համար, այն կռփում լենինիզմի բոլոր թշնամիների դեմ մղված անհաշտ պայքարում։

Պատմական մեծ միսիա վիճակվեց Ռուսաստանի պրոլետարիատին՝ առաջինը ճեղքել համաշխարհային իմպերիալիզմի շղթան, մեր երկրի աշխատավորներին ազատագրել կապիտալի ճնշումից, կառուցել սոցիալիստական հասարակարգ։ Մեր երկրի բանվոր դասակարգը պատմական այդ խնդրի կատարման համար նախապատ-



րաստված էր Կոմունիստական պարտիայի ամբողջ բազմամյա վիթխարի աշխատանքով։ Կազմակերպելով բանվոր դասակարգի և աշխատավոր գյուղացիության մարտական դաշինքը, պարտիան ապահովեց Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակը, պրոլետարիատի դիկտատուրայի հաստատումը։

Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հաղթանակից հետո Կոմունիստական պարտիան դարձավ կառավարող պարտիա, Սովետական պետության ղեկավար և ուղղություն տվող ուժը։ Նրա առջև ամենայն սրությամբ կանգնեցին նոր, սոցիալիստական պետության ստեղծման և սոցիալիզմի կառուցման ամենաբարդ խնդիրները։ Ի. Վ. Ստալինը Վ. Ի. Լենինի մերձավորագույն օգնականն էր բանվորների և գյուղացիների՝ աշխարհում առաջին սոցիալիստական պետության կառուցման և ամրապնդման գործում։ Որպես Ազգությունների գործերի ժողովրդական կոմիսար Ի. Վ. Ստալինը անմիջականորեն ղեկավարում էր Կոմունիստական պարտիայի ազգային քաղաքականության իրականացումը, քաղաքականություն, որը մեր երկրի ժողովուրդներին համախմբում

էր միասնական եղբայրական ընտանիքի մեջ՝ Սովետների դրոշի ներքո։

Քաղաքացիական պատերազմի և օտարերկրյա ինտերվենցիայի դեմ մղված պայքարի դաժան տարիներին Կոմունիստական պարտիան ամբողջ ժողովրդին ոտքի հանեց Հայրենական պատերազմի ի պաշտպանություն Հոկտեմբերյան Սոցիալիստական ռեվոլյուցիայի մեծ նվաճումների։ Սովետական պետության պաշտպանության ամբողջ գործը ղեկավարում էր պարտիայի Կենտրոնական Կոմիտեն Վ. Ի. Լենինի գլխավորությամբ։ Կարմիր Բանակի կազմակերպման ու նրա քաղաքական լուսավորության, թշնամիների ջախջախման լենինյան պլանի իրականացման ասպարեզում Լենինի մերձավորագույն օգնականներն էին Ստալինը, Մոլոտովը, Կալինինը, Սվերդլովը, Ֆրունզեն, Վորոշիլովը, Կագանովիչը, Օրջոնիկիձեն, Կիրովը, Կույբիշևը, Միկոյանը, Ժդանովը, Ձերժինսկին, Խրուշչևը և պարտիայի մյուս ականավոր գործիչները։ «...Միայն շնորհիվ այն բանի,— ասել է Վ. Ի. Լենինը,— որ պարտիան իր դիրքում էր, որ պարտիան խիստ կարգապահ էր, և այն պատճառով, որ պարտիայի հեղինակությունը միավորում էր բոլոր գերա-



տեսչությունները ու հիմնարկները, և Կենտկոմի տված լոզունգով ընթանում էին ինչպես մեկ մարդ, տասնյակները, հարյուրները,— հազարները, և վերջին հաշվով միլիոնները, միայն այն պատճառով, որ անասելի զոհաբերություններ տեղի ունեցան,— միայն այս պատճառով այն հրաշքը, որ կատարվեց, կարող էր տեղի ունենալ։ Միայն այս պատճառով էր, որ չնայելով Անտանտի իմպերիալիստների և ամբողջ աշխարհի իմպերիալիստների կրկնակի, եռակի և քառակի արշավանքներին, մենք կարողացանք հաղթել»։ (Երկեր, հատ. 30, էջ 569)։

Կենտրոնական Կոմիտեի և պարտիայի առաջնորդ Վ. Ի. Լենինի ղեկավարությամբ սովետական ժողովուրդը ջախջախեց ներքին կոնտրռևոլյուցիան և օտարերկրյա ինտերվենտներին, իր համար ապահովեց տնտեսական խաղաղ շինարարության պայմաններ։

***

Կոմունիստական պարտիայի առաջնորդ, Սովետական կառավարության ղեկավար Վ. Ի. Լենինը մշակեց տնտեսապես հետամնաց Ռուսաստանը առաջավոր, հզոր սոցիալիստական տերություն դարձնելու փի-

տականորեն հիմնավորված ծրագիրը։ Այդ ծրագիրը նախատեսում էր երկրի սոցիալիստական ինդուստրացում, ծանր արդյունաբերության բազմակողմանի զարգացում, ամբողջ ժողովրդական տնտեսության էլեկտրիֆիկացում, սոցիալիստական հիմունքներով երկրի գյուղատնտեսության վերափոխման կոոպերատիվ պլանի կենսագործում, կուլտուրական ռևոլյուցիայի իրականացում։ Կոմունիստական պարտիան ժողովրդի ստեղծագործական անսպառ ուժերն ուղղեց սոցիալիզմի կառուցման լենինյան պլանի կենսագործման նպատակին։

Վ. Ի. Լենինի մահից հետո պարտիայի և ժողովրդի թշնամիները՝ տրոցկիստները, բուխարինականները, բուրժուական նացիոնալիստները ձգտում էին պարտիան և երկիրը լենինյան ուղուց շեղել դեպի պրոլետարական ռևոլյուցիայի նվաճումների վերացման և կապիտալիստական կարգերի վերականգնման ուղին։ Կոմունիստական պարտիան Ի. Վ. Ստալինի գլխավորած Կենտրոնական Կոմիտեի ղեկավարությամբ ջախջախեց դավաճաններին ու կապիտուլյանտներին, պաշտպանեց լենինիզմը և վերցրեց մեր երկրում սոցիալիզմի կառուցման վճռական կուրս։



Ի. Վ. Ստալինը միշտ վճռականորեն պաշտպանում էր մարքսիզմ-լենինիզմի անաղարտությունը, անհաշտ պայքար էր մղում լենինիզմի թշնամիների բոլոր և ամեն տեսակ ոտնձգությունների դեմ։ Լինելով լենինիզմի ականավոր պրոպագանդիստ, նա ցույց էր տալիս լենինյան գաղափարական ժառանգությունը հոգատարությամբ վերաբերվելու հիանալի օրինակներ։ Իր «Լենինիզմի հիմունքների մասին», «Լենինիզմի հարցերի շուրջը» տեսական աշխատություններում, պարտիական համագումարներում ու կոնֆերանսներում տված զեկուցումների մեջ Ի. Վ. Ստալինը բացահայտել է լենինիզմի գաղափարական անգնահատելի հարստությունը, որը մեր պարտիայի մեծագույն սեփականությունն է։

Ի. Վ. Ստալինը մարքսիզմ-լենինիզմը միշտ դիտում էր որպես ստեղծագործական գիտություն, որն անընդհատ զարգանում է կյանքի, մասսաների ռևոլյուցիոն պրակտիկայի հետ ունեցած սերտ կապի մեջ։ Հետևելով Լենինին, նա միշտ ընդգծում էր, որ թեորիան ոչ թե դոգմա է, այլ գործողության ուղեցույց, և իր ամբողջ գործունեության մեջ ցույց էր տալիս մարքսիստական-լենինյան թեորիան ստեղծագործաբար կիրառելու,

պարտիայի քաղաքականությունը մշակելիս ու հիմնավորելիս, սոցիալիստական շինարարության պրակտիկ խնդիրները լուծելիս այն հմտորեն օգտագործելու օրինակ։

Ղեկավարվելով լենինյան ցուցումներով, որոնք հետագա զարգացում գտան Ի. Վ. Ստալինի աշխատություններում և պարտիական որոշումներում, Կոմունիստական պարտիան մշակեց ու կենսագործեց երկրի սոցիալիստական ինդուստրացման և գյուղատնտեսության կոլեկտիվացման քաղաքականությունը։ Պատմական կարճ ժամկետում մեր Հայրենիքը վիթխարի թռիչք գործեց հետամնացությունից դեպի պրոգրես, ագրարային երկրից դարձավ ինդուստրիալ-կոլտնտեսային, սոցիալիստական հզոր տերություն։

Սոցիալիզմի կառուցման համար մղված պայքարում Կոմունիստական պարտիան աճում և ամրապնդվում էր, բազմապատկում իր կապերը մասսաների, ժողովրդի հետ։ Պարտիայի Կենտրոնական Կոմիտեն անդուլ հոգատարություն էր ցուցաբերում պարտիայի անդամի կոչումն ու նշանակությունը ամեն կերպ բարձրացնելու նկատառմամբ։ Բազմաթիվ թշնամիների դեմ մղված պայքարում պարտիան պաշտպանեց և ամրապնդեց իր



շարքերի լենինյան միասնությունը, է՛լ ավելի համախմբվեց իր Կենտրոնական Կոմիտեի շուրջը։ Պարտիական շարքերի միաձույլ միասնությունը եղել է, կա ու կլինի պարտիայի ամրության ու անպարտելիության վճռական պայմանը։

Իր ամբողջ գործունեության մեջ պարտիան ղեկավարվում է Մարքսի—Էնգելսի—Լենինի—Ստալինի մեծ ուսմունքով։

Ի. Վ. Ստալինը ստեղծագործաբար զարգացրեց մարքսիստական-լենինյան թեորիան պատմական նոր պայմանների համեմատ։ Ի. Վ. Ստալինի աշխատություններում հետագա զարգացում է գտել լենինյան ուսմունքը իմպերիալիզմի մասին, տրվել է կապիտալիստական սիստեմի ընդհանուր ճգնաժամի վերլուծությունը, ձևակերպվել է ժամանակակից կապիտալիզմի հիմնական տնտեսական օրենքը։ Ի. Վ. Ստալինը մի շարք նոր դրույթներով հարստացրեց Վ. Ի. Լենինի ուսմունքը նոր տիպի մարքսիստական պարտիայի մասին, պրոլետարական ռևոլյուցիայի և պրոլետարիատի դիկտատուրայի մասին, պրոլետարիատի դասակարգային պայքարի ստրատեգիայի ու տակտիկայի մասին։

Մեծ Լենինը առաջ քաշեց ու բազմակողմանիորեն մշակեց բանվոր դասակարգի և

գյուղացիության դաշինքի գաղափարը, դաշինք, որտեղ ղեկավար դերը պատկանում է բանվոր դասակարգին։ Նա այդ դաշինքը համարում էր պրոլետարիատի դիկտատուրայի բարձրագույն սկզբունքը, այն գլխավոր ուժը, որն ընդունակ է ճնշել շահագործող դասակարգերին և կառուցել սոցիալիզմ։ Ի. Վ. Ստալինը վճռականորեն պաշտպանում էր բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի լենինյան գաղափարը տրոցկիստական-բուխարինական թշնամական կլիկի հարձակումներից և պարտիայի ու պետության մյուս ղեկավարների հետ միասին ամենաակտիվ մասնակցություն էր ցուցաբերում Լենինի գաղափարների հետևողական կենսագործմանը։ Բանվոր դասակարգի և կոլտնտեսային գյուղացիության դաշինքը, որը կոփվել է Կոմունիստական պարտիայի կողմից, հանդիսանում է Սովետական պետության ամրության ու անպարտելիության աղբյուրը։

Սովետական բազմազգ պետության հիմքերի հիմքն է ժողովուրդների բարեկամությունը։ Վ. Ի. Լենինը մշակեց ազգային հարցի վերաբերյալ պարտիայի կուռ թեորիան, ծրագիրն ու տակտիկան։ Նա մեր երկրի ժողովուրդների իրավահավասարության ու բա-



րեկամության քաղաքականության ոգեշնչողն էր։ Ազգային հարցի վերաբերյալ լենինյան ծրագրային դրույթները իրենց հետագա զարգացումն ստացան Ի. Վ. Ստալինի աշխատություններում, պարտիայի որոշումներում։ Իրականացնելով լենինյան-ստալինյան ազգային քաղաքականությունը, Կոմունիստական պարտիան մեր Հայրենիքի բոլոր ժողովուրդներին համախմբեց միասնական եղբայրական ընտանիքի մեջ, ապահովեց ՍՍՌՄ բոլոր ժողովուրդների տնտեսական և կուլտուրական չտեսնված ծաղկումը։

Ընդհանրացնելով սոցիալիստական շինարարության փորձը Ի. Վ. Ստալինը մշակեց քաղաքատնտեսության մի շարք պրոբլեմներ։ Ելնելով լենինյան ցուցումներից, նա հիմնավորեց երկրի սոցիալիստական ինդուստրացման և գյուղատնտեսության կոլեկտիվացման իրականացման ուղիներն ու մեթոդները։ Ի. Վ. Ստալինի աշխատություններում տրված է սոցիալիստական տնտեսավարման մեթոդների, արժեքի օրենքի և դրամի օգտագործման անհրաժեշտության, տնտեսական հաշվարկի, իրենց աշխատանքի արդյունքներով աշխատողների նյութական շահագրգռվածության սկզբունքի վերաբերյալ լենինյան դրույթների հետագա մշակումը։ Նա

զարգացրեց ու կոնկրետացրեց մարքսիստական-լենինյան դրույթները սոցիալիստական հասարակարգի զարգացման օրինաչափությունների և կոմունիզմի բարձրագույն փուլին նրա աստիճանական անցման վերաբերյալ։ Հենվելով Մարքսի, Էնգելսի, Լենինի աշխատություններում տրված ելակետային դրույթների վրա, Ստալինը ձևակերպեց սոցիալիզմի հիմնական տնտեսական օրենքը և ժողովրդական տնտեսության պլանաչափ, պրոպորցիոնալ զարգացման օրենքը։

Ի. Վ. Ստալինը անդուլ կերպով աշխատում էր Սովետական պետության ամրապնդման վրա։ Նա նշում էր, որ սոցիալիստական պետության ամրությունն ու հզորությունը կոմունիզմի հաջող կառուցման կարևորագույն պայմանն է։

Կոմունիստական պարտիան միշտ էլ հսկայական ուշադրություն է նվիրել մեր Հայրենիքի պաշտպանունակության ամրապնդմանը։ Հայրենական մեծ պատերազմում Կոմունիստական պարտիան հանդես եկավ որպես սովետական ժողովրդի և նրա Զինված Ուժերի ոգեշնչող ու մարտական ղեկավար։ Պարտիայի Կենտրոնական Կոմիտեի և Սովետական կառավարության որոշմամբ Սովետական պետության Զինված Ուժերի գլուխ



կանգնեց Ի. Վ. Ստալինը։ Պարտիայի Կենտկոմը անմիջականորեն ռազմական աշխատանքի ուղարկեց Ն. Ա. Բուլգանինին, Ա. Ա. Ժդանովին, Ա. Ս. Շչերբակովին, Ն. Ս. Խրուշչևին և Կենտկոմի այլ անդամների։ Մեր սոցիալիստական Հայրենիքի պատվի և անկախության համար մղված դաժան ճակատամարտերում Կոմունիստական պարտիան է՛լ ավելի հարազատ դարձավ ժողովրդին։ Հայրենական մեծ պատերազմում Սովետական Միության հաղթանակը մեկ անգամ ևս ցույց տվեց սովետական հասարակական և պետական կարգի կենսական մեծ ուժը, պարտիայի քաղաքականության իմաստությունն ու հեռատեսությունը։

Հիտլերյան Գերմանիայի և իմպերիալիստական Յապոնիայի ջախջախման հետևանքով իմպերիալիստական սիստեմից անջատվեցին Եվրոպայի և Ասիայի մի շարք երկրներ։ Ստեղծվեց խաղաղության, դեմոկրատիայի ու սոցիալիզմի հզոր լագերը ՍՍՌՄ-ի գլխավորությամբ։

***

Ղեկավարվելով լենինիզմի ուսմունքով, Կոմունիստական պարտիան մշակեց գիտականորեն հիմնավորված և պայքարի տաս-

նամյակներով ստուգված քաղաքականություն, որն արտահայտում է հասարակության նյութական կյանքի զարգացման պահանջմունքները, ժողովրդի արմատական շահերը։

Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը, հենվելով ծանր արդյունաբերության զարգացման հաջողությունների վրա, նշել են և հաստատակամորեն իրականացնում են թեթև ու սննդի արդյունաբերության և գյուղատնտեսության բոլոր ճյուղերի արագ զարգացման լայն ծրագիր։

Սովետական ժողովուրդը հսկայական ոգևորությամբ ընդունեց մեր երկրի էկոնոմիկայի և աշխատավորների նյութական բարեկեցության հետագա վերելքի ուղղությամբ պարտիայի ու կառավարության միջոցառումները։ Օրավուր ընդլայնվում է համաժողովրդական սոցիալիստական մրցությունը հնգամյա պլանը ժամկետից շուտ կատարելու համար, աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու համար, որը ժողովրդի նյութական բարեկեցության աճի վճռական պայմանն է։

Ոգեշնչված գյուղատնտեսության շեշտակի վերելքի վերաբերյալ պարտիայի և կառավարության պատմական որոշումներով, սո-



ցիալիստական հողագործության աշխատավորները այս տարի լուրջ հաջողություններ ձեռք բերեցին հացահատիկի և գյուղատնտեսական մյուս մթերքների արտադրությունն ավելացնելու ասպարեզում։ Չնայած Ուկրաինայի հարավում և Պովոլժյեում եղանակի անբարենպաստ պայմաններին, հացահատիկային կուլտուրաների ընդհանուր բերքը 1954 թվականին ավելին է, քան 1953 թվականին։ Հացահատիկի արտադրության ու մթերումների զգալի ավելացումը ձեռք է բերվել Սիբիրի, Ղազախստանի և Ուրալի շրջաններում խոպան ու խամ հողերի հաջող յուրացման և բերքատվության բարձրացման շնորհիվ։ Արևմտյան Սիբիրի շրջաններում անցյալ տարվա համեմատությամբ հավաքվել է երկու անգամ ավելի հացահատիկ, Ղազախական ՍՍՌ-ում՝ 35 տոկոսով ավելի, Ալթայի երկրամասում՝ գրեթե չորս անգամ ավելի, քան 1953 թվականին։

Հաշվի առնելով կուտակված փորձը և ռեալ հնարավորությունները, Կոմունիստական պարտիան ու Սովետական կառավարությունը առաջադրել են համաժողովրդական խնդիր՝ արդեն 1956 թվականին նոր յուրացվող հողերում ցանքատարածությունները հասցնել 28—30 միլիոն հեկտարի։ Ցանքատարածությունների այդպիսի աճը, որը հավա-

*սար է միասին վերցրած Ֆրանսիայի և Իտալիայի գրեթե ամբողջ ցանքատարածությանը, հնարավորություն կստեղծի հացահատիկի մթերումներն ու գնումները կատարել այնպիսի չափերով, որոնք ապահովում են հացամթերքների ասպարեզում մեր երկրի պահանջմունքների լիակատար բավարարումը՝ ունենալու հացի պետական անհրաժեշտ ռեզերվներ և բավականաչափ քանակությամբ կեր անասնաբուծության համար։*

*Արդյունաբերության և գյուղատնտեսության զարգացման հաջողությունների հիման վրա անշեղորեն բարձրանում է սովետական ժողովրդի նյութական բարեկեցությունը։ Աճում է բանվորների ու ծառայողների ռեալ աշխատավարձը, ավելանում են գյուղացիների եկամուտները։*

*Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության քաղաքականությունը, որն ուղղված է էկոնոմիկայի հետագա վերելքի, ժողովրդի կենսամակարդակի բարձրացման, մեր Հայրենիքի հզորության և անվտանգության ամրապնդման նպատակին, ապահովում է բանվոր դասակարգի և կոլտնտեսային գյուղացիության անխախտ*



*դաշինքի, ՍՍՌՄ ժողովուրդների բարեկամության հետագա ամրապնդումը։*

*Պարտիան, անշեղորեն իրականացնելով 19-րդ համագումարի որոշումները, ամրապնդում է իր շարքերի միասնությունն ու մարտունակությունը, ամեն կերպ զարգացնում ներպարտիական դեմոկրատիան, ինքնաքննադատությունը և հատկապես ներքևից եկող քննադատությունը, հետևողականորեն ղեկավարվում Լենինի կողմից մշակված պարտիական կյանքի նորմաներով և պարտիական ղեկավարության սկզբունքներով։ Պարտիայի մասին լենինյան ուսմունքի կարևորագույն սկզբունքներից մեկը պարտիական կոլեկտիվ ղեկավարության սկզբունքն է։ Դեռևս նախառևոլյուցիոն տարիներին Վ. Ի. Լենինը պարտիայի Կենտրոնական Կոմիտեն անվանել է ղեկավարների կոլեկտիվ, պարտիայի սկզբունքները պահպանող և մեկնաբանող։ Նա միշտ պնդում էր, որ խստիվ պահպանվեն պարտիայի Կանոնադրությամբ նախատեսված՝ պարտիական կյանքի նորմաները։*

*Կենտրոնական Կոմիտեի կոլեկտիվ փորձն ու կոլեկտիվ իմաստությունը, որոնք հենվում են Մարքսի—Էնգելսի—Լենինի—Ստալինի թեորիայի գիտական հիմքի և ղեկավար կադրերի լայն նախաձեռնության*

*վրա, ժողովրդական մասսաների ստեղծագործական եռանդի և ինքնագործունեության վրա, ապահովում են պարտիայի և երկրի ղեկավարման ճշտությունը։*

***

*Կոմունիստական պարտիան հետևողականորեն վարում է Սովետական պետության լենինյան արտաքին քաղաքականությունը, ժողովուրդների միջև խաղաղության քաղաքականություն, որը հիմնված է երկու սիստեմների՝ կապիտալիստական և սոցիալիստական սիստեմների տևական գոյակցության և խաղաղ մրցության հնարավորության վերաբերյալ լենինիզմի դրույթի վրա։*

*«Երկու սիստեմների համագործակցության միտքը,— ասել է Ի. Վ. Ստալինը,— առաջին անգամ հայտնել է Լենինը։ Լենինը մեր ուսուցիչն է, իսկ մենք, սովետական մարդիկ՝ Լենինի աշակերտները։ Մենք երբեք չենք նահանջել և չենք նահանջի Լենինի ցուցումներից» («Պրավդա», 8 մայիսի 1947 թվականի)։*

*Խաղաղության և ժողովուրդների անվտանգության համար մղվող պայքարի հաստատուն ու հետևողական քաղաքականությունը, որն իրագործում է ՍՍՌՄ-ը, համապատասխանում է սովետական ժողովրդի և բոլոր*



*խաղաղասեր ժողովուրդների արմատական շահերին։ Հետպատերազմյան տարիներին մեր երկիրը դարձավ էլ ավելի ուժեղ և հզոր, նա ընթանում է խաղաղության համար մղվող պայքարի ավանգարդում։ Խաղաղության համար մղվող պայքարում հզոր ուժ է դեմոկրատիայի և սոցիալիզմի ճամբարը։ Այդ ճամբարի բազմակողմանի ամրապնդումը մեր պարտիան և սովետական ամբողջ ժողովուրդը համարում են իրենց սրբազան ինտերնացիոնալ պարտքը։*

*Կոմունիստական պարտիան սովետական ժողովրդի առաջնորդն է, պարտիայի և ժողովրդի միասնության մեջ է կոմունիզմի մեծ ուժը։ Մարքսի—Էնգելսի—Լենինի—Ստալինի դրոշով, Կոմունիստական պարտիայի իմաստուն ղեկավարությամբ սովետական ժողովուրդը վստահորեն ընթանում է դեպի կոմունիզմի հաղթանակը։*

---

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ԴԱՏԱՐԱՆԸ ԻՍԿԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԴԱՏԱՐԱՆ Է

Պրոֆ. Ի. ԳՈԼՅԱԿՈՎ

Ժողովրդական դատարանների ընտրությունները քաղաքական կարևոր կամպանիա են։ Այդ գործին ներգրավվում են բնակչության ամենալայն մասսաները։

Այս տարի ընտրական կամպանիան տեղի է ունենում տնտեսական և կուլտուրական շինարարության բնագավառում սովետական ժողովրդի ձեռք բերած նոր խոշոր հաջողությունների իրադրության մեջ։ Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ հաջողությամբ կատարվում է տնտեսական և կուլտուրական շինարարության վեհ պլանը, որ ընդունել է պարտիայի 19-րդ համագումարը։ Սովետական ժողովուրդը կենսագործում է Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության առաջադրած խնդիրը՝ սեղծել գյուղատնտեսության շեշտակի վերելք և ծավալել թեթև ինդուստրիայի զարգացումը՝ աշխատավորների նյու-



թական մակարդակի շեշտակի բարձրացումն ապահովելու համար։

Կոմունիստական պարտիայի իմաստուն քաղաքականությունը ապահովեց Սովետական պետության հզորության հետագա ամրապնդումը, պետություն, որը հանդիսանում է կոմունիզմի կառուցման և արտաքին թշնամիներից պաշտպանվելու գլխավոր գործիքը։ Սովետական պետության օրգանների սիստեմում կարևոր տեղ է գրավում սովետական դատարանը։ Նրա խնդիրն է՝ անողոք պայքար մղել սովետական հասարակարգի թշնամիների դեմ, ինչպես նաև գողերի, խուլիգանների, սպեկուլյանտների և այլ հանցագործ տարրերի դեմ, որոնք խախտում են սովետական օրինականությունը, պետության սահմանած կարգը։ Միաժամանակ սովետական դատարանը կանգնած է սովետական մարդկանց կյանքի, առողջության պահպանման դիրքերում, պաշտպանում է նրանց իրավունքները և օրինական շահերը։ Աշխատավորների բոլոր իրավունքները, որ արձանագրված են ՍՍՌՄ Կոնստիտուցիայում, պաշտպանվում են սովետական դատարանի կողմից։

Մեր դատարանը պաշտպանում է պետության շահերը, սոցիալիստական սեփակա-

նությունը, խստագույն կարգուկանոն։ Դատարանը խստիվ պաշտպանում է պետական հիմնարկների և ձեռնարկությունների, կոլտնտեսությունների և կոոպերատիվ այլ ձեռնարկությունների իրավունքներն ու շահերը։

Սովետական դատարանի դերը առանձնապես մեծանում է ներկայումս, երբ Սովետական Միությունը Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ իրագործում է աստիճանական անցումը սոցիալիզմից դեպի կոմունիզմ։ Այժմ, ավելի քան երբեք, անհրաժեշտ է ամենայն խստությամբ պահպանել սովետական օրենքները, խնամքով վերաբերվել դեպի ժողովրդական բարիքը, պահպանել աշխատանքային կարգապահությունը և սոցիալիստական համակեցության կանոնները։ Այդ գործում պետությանը ակտիվորեն օգնում է սովետական դատարանը։ Անողոքաբար պայքարելով օրենքը խախտողների դեմ, խարազանելով բյուրոկրատիզմն ու քաշքշուկը, պաշտպանելով քաղաքացիների իրավունքները, դատարանը ակտիվ օգնություն է ցույց տալիս պետությանը՝ կոմունիզմի կառուցման և աշխատավորների կոմունիստական դաստիարակության նրա մեծ խնդիրների կատարման գործում։



Սովետական դատարանի կարևորագույն առանձնահատկությունը նրա ժողովրդականությունն է։ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան խորտակեց բուրժուական պետական ապարատը, աշխատավորների ճնշման ու կեղեքման ապարատը և ստեղծեց նոր, սովետական պետական ապարատ, որը իսպառ է դրված ժողովրդին, սոցիալիզմին։ Ոչնչացվեց նաև հին դատարանը, որտեղ աշխատավորները չէին կարող գտնել ճշմարտություն, դատարան, որ հավատարմորեն ծառայում էր շահագործող դասակարգերին։ Սովետական իշխանությունը ստեղծեց իր դատարանը, ժողովրդի իսկական դատարանը, նրա գործունեությանը մասնակից դարձնելով հենց իրենց՝ աշխատավոր մասսաներին։

Դատարանի մասին 1917 թվականի նոյեմբերի 24-ի № 1 և 1918 թվականի մարտի 7-ի № 2 դեկրետները դրեցին մեր երկրում արդարադատության դեմոկրատական հաստատուն հիմքերը՝ դատարանի ժողովրդականությունը, դատավարության ապահովումը մայրենի լեզվով, դատավարության հրապարակայնությունը, բանավոր վարումը և մրցումը, մեղադրյալի պաշտպանության իրավունքը։

*Կանգնելով Լենինի նշած այդ ուղու վրա, սովետական դատարանը, սոցիալիստական օրինականության կիրառողը, դարձավ մի հզոր գործիք սոցիալիստական հասարակարգի ամրապնդման, նոր սոցիալիստական կենցաղի համար մղվող պայքարում։ Սովետական դատարանի գործունեության էֆեկտիվությունն այն է, որ մեզ մոտ արդարադատությունը կազմակերպված է բոլոր քաղաքացիների համար միասնական ու հավասար դատարանի սկզբունքներով, անկախ քաղաքացիների սոցիալական, գույքային և պաշտոնական դրությունից, նրանց ազգային և ռասսայական պատկանելությունից. բոլոր դատարանների համար ՍՍՌՄ քրեական, քաղաքացիական և դատավարական օրենսդրության միասնական ու պարտադիր լինելու սկզբունքներով (Դատարանակազմության Օրենքի 5-րդ հոդված)։*

*Սովետական հասարակարգի լիակատար դեմոկրատացումը սոցիալիզմի հաղթանակի պայմաններում՝ սովետական դատարանը դարձրեց Սովետական պետության է՛լ ավելի ճկուն գործիք կոմունիզմի կառուցման համար նրա պայքարում, դատարանը դարձրեց է՛լ ավելի մատչելի ու հարազատ ժողովրդի համար։*



***

*Սովետական արդարադատության ժողովրդականությունը ապահովվում է դատարանի դեմոկրատական այնպիսի հիմունքներով, որ արդարադատության իրականացմանը մասնակցում է ինքը ժողովուրդը, դատավորները անկախ են և ենթարկվում են միայն օրենքին, մեղադրյալը ունի պաշտպանության իրավունք։*

*ՍՍՌՄ բոլոր դատարաններում գործերի քննությունը կատարվում է ժողովրդական ատենակալների մասնակցությամբ։ Դատարանի կազմում ժողովրդական ատենակալներ մտցնելը հսկայական քաղաքական նշանակություն ունի։ Հայտնի է, որ բուրժուական դատարանին մասնակցում են երդվյալ ատենակալները։ Բայց այդ ատենակալները չեն ներկայացնում ժողովրդին և, ինչպես դատավորները, պաշտպանում են միայն հարուստների շահերը, կապիտալի շահերը։ Սովետական դատարանի ժողովրդական ատենակալները ժողովրդի իսկական ներկայացուցիչներն են, նրանք ընտրվում են ժողովրդական դատավորների հետ միասին նույն հիմունքներով և նույն ժամկետով՝ երեք տարով։ Ժողովրդական ա-*

ատենակալներին ընտրում է բնակչությունը այն մարդկանցից, որոնք լավ հայտնի են իրենց աշխատանքային ու հասարակական գործունեությամբ, հարգանք ու հեղինակություն են վայելում բնակչության մեջ։ Ժողովրդական ատենակալները արդարադատության իրականացման գործում իրավահավասար են դատավորի հետ, նրա հետ միասին մասնակցում են քրեական և քաղաքացիական յուրաքանչյուր գործի հետաքննությանը, խորհրդակցական սենյակում դատավորի հետ միասին կայացնում են դատավճիռ կամ վճիռ, որն ուժ ունի միայն այն դեպքում, եթե այն ստորագրում է ո՛չ միայն դատավորը, այլև երկու ժողովրդական ատենակալները։

Սովետական օրենքները պաշտպանում են ժողովրդական ատենակալների բարձր հեղինակությունը։ Ուստի ժողովրդական ատենակալի դեմ բացարկ կարելի է հայտնել միայն այն դեպքում, եթե դրա համար կան օրինական հիմքեր։ Այդ միայն կապիտալի երկրներում, մանավանդ ԱՄՆ-ում է, որտեղ երդվյալ ատենակալների դեմ բացարկ հայտնելու համար պատճառաբանություն չի պահանջվում, կան այնպիսի անեկդոտային դեպքեր, երբ մի քրեական գործով կող-



մերը բացարկ են հայտնում հարյուրավոր երդվյալ ատենակալների դեմ։

Ժողովրդական ատենակալների ներգրավումը արդարադատության իրականացմանը իրապես արտահայտում է ժողովրդի լայն մասնակցությունը պետության գործերին և դատարանի վճիռները դարձնում է ավելի համոզիչ ու ճշմարտացի, իրոք մատչելի է դարձնում մեր դատարանը ժողովրդի համար։

Մեր երկրում արդարադատության կարևորագույն հիմքերից մեկը դատավորների ինքնուրույնությունն է յուրաքանչյուր քաղաքացիական կամ քրեական գործի վճռման ժամանակ։ Դատական գործի վճռման ժամանակ դատավորի անկախությունը սովետական դատարանին հնարավորություն է տալիս գործերը վճռել ճշմարտացիորեն, սովետական օրենքի ոգուն լիովին համապատասխան։ Հայտնի է, որ բուրժուական դատավորները պաշտպանում են կապիտալիստներին, դատապարտում են չքավորներին, բանվորներին, պրոգրեսիվ գործիչներին, իսկ հարուստների ոճրագործությունները թողնում են անպատիժ։ Այն ստահոդ պնդումները, թե իբր բուրժուական դատարանը «անաչառ է», հերքվում են արդի պրակտիկայով երբ, օ-

*օրինակ, ԱՄՆ-ի դատարանը դատապարտեց կոմունիստական պարտիայի տասնմեկ ղեկավարներին, որոնք նույնիսկ ԱՄՆ-ի օրենքներով ոչ մի բանում մեղավոր չէին։ Ֆաշիստական հազարավոր ամենածանր հանցագործներ, որոնց ձեռքերը ներկված են բազմաթիվ անմեղ զոհերի արյունով, արդարացվել են բուրժուական դատարանի կողմից, իսկ որոշ դեպքերում՝ դատապարտվել ծիծաղելի մեղմ պատժի, մինչդեռ ազնիվ մարդիկ— խաղաղության և դեմոկրատիայի մարտիկները—դաժանորեն հալածվում են։ Ամերիկյան ականավոր գրող Թ. Դրայզերը գրել է, որ ամերիկյան դատավորները խոնարհ ծառաներ են, կարյերիստներ, գործիք ուրիշների ձեռքում, քծնողներ, որոնք սողում են ֆինանսական մագնատների և քաղաքական պարագլուխների ոտքերի տակ։*

*Միայն սովետական դատարանը և ժողովրդական դեմոկրատիայի երկրների դատարաններն են, որ իրենց դատավճիռներում ու վճիռներում արտահայտում են ժողովրդի կամքը, գործերը վճռում են օրենքին խստիվ համապատասխան։*

*Սովետական դատավորի անկախ լինելը և միայն օրենքին ենթարկվելը նշանակում է,*



*որ ոչ ոք իրավունք չունի դատավորին ցուցում տալու, թե ինչպես պետք է վճռել այս կամ այն կոնկրետ գործը, քանի որ նման միջամտությունը խորթ է սովետական օրենքների ոգուն, որոնք դատավորին լիակատար ազատություն են տալիս գործերը վճռելիս և պարտավորեցնում են նրան խստորեն ղեկավարվել օրենքով, որը մեր երկրում արտահայտում է ժողովրդի կամքը։*

*Սովետական արդարադատության կարևորագույն սկզբունքներից մեկն է նաև մեղադրյալի պաշտպանության իրավունքը։ Սովետական օրենքները մեղադրյալին պաշտպանվելու լայն իրավունք են տալիս։ Մեղադրյալն իրավունք ունի պաշտպանվելու առաջադրված մեղադրանքի դեմ, վիճարկել այն, բերել ծանրակշիռ փաստարկներ իրեն պաշտպանելու համար։*

*Միշտ չէ, որ մեղադրյալի համար հեշտ է իրեն պաշտպանելը, ուստի և օգնելու համար օրենքը նրան տալիս է դատապաշտպան։ Դատապաշտպանի մասնակցությունը նպաստում է գործի հանգամանորեն հետաքննմանը, մեղադրյալին հնարավորություն է տալիս պաշտպանվելու, անկախ այն բանից, նա միջոցներ ունի դատապաշտպանի մատուցած ծառայության համար վարձա-*

տրելու, թե ոչ։ Գործում դատապաշտպանի մասնակցությունը դատավարությանը տալիս է ավելի մեծ դաստիարակչական նշանակություն և նպաստում է, որ ավելի ճիշտ դատավճիռ կայացվի։



Մեր երկրում սովետական դատարանի կազմակերպման և գործունեության դեմոկրատական հիմունքները ապահովում են հանցագործության դեմ մղվող հաջող պայքարը և պետությանը ցույց տրվող ակտիվ օգնությունը կոմունիզմի կառուցման և աշխատավորների կոմունիստական դաստիարակության գործում։ Տարեցտարի մեր երկրում նվազում է հանցագործությունը։ Սակայն սովետական օրենքները խախտողների դեմ մղվող պայքարը այսուհետև ևս պետք է լինի սովետական դատարանի կարևոր խնդիրը։ Դրա համար անհրաժեշտ է բարելավել դատարանի, առանձնապես ժողովրդական դատարանի աշխատանքը, որը քննում է քրեական և քաղաքացիական գործերի հիմնական մասը։ Պրակտիկան ցույց է տալիս, որ դեռևս լրիվին վերացված չեն սխալ դատապարտման, աշխատանքային և բնակարանային գործերի քննության ժամանակ քաղաքացիների իրավունքների և օրի-



նական շահերի նկատմամբ ցույց տրվող ձևական վերաբերմունքի դեպքերը։ Մեր մամուլը իրավացիորեն քննադատում է գործերի քննության ժամանակ դատարանում երբեմն թույլ տրվող քաշքշուկը։

Սովետական դատարանը պետք է լինի օրինականության ամենախիստ կիրառողն ու պաշտպանը, նա պետք է դատապարտի միայն նրանց, ովքեր իսկապես մեղավոր են, խստորեն խարազանի քաշքշուկն ու ձգձգումը, ժողովրդական միջոցների վատնումը և պաշտպանի ՍՍՌՄ քաղաքացիների իրավունքները։

Սովետական դատարանների խնդիրները պատասխանատու և պատվավոր խնդիրներ են։ Աշխատավորները ընտրական կամպանիային ցույց տրվող իրենց ակտիվ մասնակցությամբ պետք է աջակցեն ժողովրդական դատարանի աշխատանքի հետագա բարելավմանը։ Կասկած չկա, որ սովետական մարդիկ կընտրեն այնպիսի ժողովրդական դատավորներ և ժողովրդական ատենակալներ, որոնք ընդունակ են սոցիալիստական արդարադատությունն իրականացնելու լիակատար գործիմացությամբ, հոգուտ պետության շահերի, հոգուտ ժողովրդի շահերի։

---

# ԻՆՉՊԵՍ ԿԱԶՄԱԿԵՐՊԵԼ ԶՐՈՒՅՑ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԱՐՏԱԴՐՈՂԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ ԲԱՐՁՐԱՑՆԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Վ. ԱՄԻՐԲԵԿՅԱՆ

Մեծ Լենինը դեռևս իր հռչակավոր «Սովետական իշխանության հերթական խնդիրները» ծրագրային աշխատության մեջ ասել է.

«Ամեն մի սոցիալիստական ռևոլյուցիայի մեջ պրոլետարիատի կողմից իշխանության նվաճման խնդիրը լուծելուց հետո և այնչափ, որչափ գլխավորապես և հիմնականում լուծվում է էքսպրոպրիատորներին էքսպրոպրիացիայի ենթարկելու և նրանց դիմադրությունը ճնշելու խնդիրը, անհրաժեշտաբար առաջին պլանն է մղվում մի արմատական խնդիր՝ ստեղծել ավելի բարձր հասարակական կացութաձև, քան կապիտալիզմն է, այսինքն՝ բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը, իսկ դրա կապակցությամբ (և դրա համար) նրա բարձրագույն կազմակերպումը»:

Լենինի այս խոսքերը յուրաքանչյուր բան-



վորի, ինժեների, տեխնիկի պարտավորեցնում է մտածել ինչպես իր, այնպես էլ իր բրիգադայի, իր ագրեգատի, իր ցեխի, իր հերթափոխի, իր գործարանի, ֆաբրիկայի մասշտաբով աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու մասին: Սովետական երկրի երկարամյա փորձով քաղաքի և գյուղի աշխատավորները գիտեն, թե ինչպիսի վճռական նշանակություն ունի աշխատանքի արտադրողականության բարձրացումը նյութական բարիքներ ստեղծելու, մեր Հայրենիքի հզորության ամրապնդման, կոմունիստական շինարարության համար:

Ագիտատորը, եթե ուզում է աշխատանքի արտադրողականության մասին իր զրույցը դարձնել բովանդակալից, նպատակասլաց և յուրաքանչյուր բանվորի գիտակցությանը հասցնել այն, չի կարող անտեսել այդ առթիվ մարքսիզմի կլասիկների ցուցումները, պարտիայի և կառավարության որոշումները: Բայց այդ չի նշանակում, թե ագիտատորն իր կարճատև զրույցի ժամանակ պետք է զբաղվի միայն ցիտատներ բերելով: Ագիտատորի խնդիրն է աշխատանքի արտադրողականության բարձրացման մասին զրույցը կառուցել միաժամանակ տվյալ ձեռնարկության աշխատանքից վերցրած կոնկրետ և

կենդանի օրինակների վրա։ Դրական օրինակի դաստիարակչական նշանակությունը հսկայական է։ Ագիտատորի զրույցում բերված դրական օրինակը լավ է տպավորվում ունկնդիրների մեջ։

Ճիշտ են անում այն ագիտատորները, որոնք իրենց զրույցների ընթացքում պատմում են տվյալ ձեռնարկության առաջավորների փորձի ու նրանց ձեռք բերած հաջողությունների մասին։

Սակայն լինում են դեպքեր, երբ որոշ ագիտատորներ իրենց ամբողջ զրույցը կառուցում են միայն առաջավորների անունները թվարկելով և մի քանի շաբլոն արտահայտություններով այն մասին, թե այդ առաջավորները բարեխղճորեն են օգտագործում աշխատանքային ժամերը, շուտ են գալիս աշխատանքի, ուշ վերադառնում, խորանում են տեխնոլոգիայի մեջ և այլն։ Ինչ խոսք, որ ունկնդիրներին այդ չի բավարարում։ Տեղական փաստեր բերելու ժամանակ ագիտատորը պետք է ընտրություն կատարի, այնպիսի օրինակներ բերի, որը ուսանելի լինի մյուսների համար։ Դրան կարելի է հասնել, եթե ագիտատորը լավ նախապատրաստվի իր զրույցին, նախօրոք խորհրդակցի առաջավոր բանվորների, ինժեներա-տեխնիկական աշ-



խատողների հետ, իր համար պարզի, թե ինչպես, ինչ ճանապարհներով են արտադրության առաջավորները հասնում աշխատանքի բարձր արտադրողականության։ Այդ բոլորից հետո, ագիտատորը կարող է համարձակորեն հանդես գալ ունկնդիրների առաջ և նրա զրույցը կլինի հետաքրքրական ու կտա անհրաժեշտ արդյունքը։

Որպեսզի հաջողությամբ նախապատրաստվի և անցկացվի աշխատանքի արտադրողականության մասին զրույցը, ագիտատորն ինքը պետք է պարզ ու որոշակի պատկերացում ունենա տվյալ թեմայի վերաբերյալ։ Ագիտատորը լավ պետք է հիշի ՍՄԿՊ 19-րդ համագումարում ընկեր Գ. Մ. Մալենկովի զեկուցման այն խոսքերը, թե մեր երկրում աշխատանքի արտադրողականության արագ աճը ամենից առաջ ժողովրդական տնտեսության մեջ նոր տեխնիկայի և առաջավոր տեխնոլոգիական պրոցեսների լայն արմատավորման արդյունքն է, արտադրության մեքենայացման և էլեկտրիֆիկացման, հատկապես աշխատատար և ծանր աշխատանքների մեքենայացման արդյունք, ինչպես նաև աշխատանքի լավագույն կազմակերպման, աշխատավորների հանրակրթական և կուլտուրական մակարդակի աճի ու

նրանց արտադրական որակավորման բարձրացման արդյունք։

Այս տեսանկյունով էլ ագիտատորը պետք է իր ունկնդիրներին պարզաբանի միութենական, ռեսպուբլիկական և տեղական մասշտաբի յուրաքանչյուր փաստ, թիվ։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 37-րդ տարեդարձի մասին ընկեր Մ. Զ. Սաբուրովի զեկուցման մեջ նշվում է, որ ընթացիկ 1954 թվականին, անցյալ տարվա համեմատությամբ, արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականությունը կաճի մոտավորապես 7 տոկոսով, իսկ 1950 թվականի համեմատությամբ՝ 33 տոկոսով։ Սակայն աշխատանքի արտադրողականության աճի այսպիսի տեմպն անբավարար է։ Պարտիան և կառավարությունը խնդիր են դրել կարճ ժամանակամիջոցում ստեղծել ժողովրդական սպառման առարկաների առատություն։ Այդ բանը կարելի է գլուխ բերել, եթե է՛լ ավելի բարձրանա աշխատանքի արտադրողականությունը, թե արդյունաբերության և թե գյուղատնտեսության մեջ։

Այժմ Մոսկվայի առաջավոր ձեռնարկությունների հայրենասիրական նախաձեռնությամբ ամբողջ երկրում սոցիալիստական



մրցություն է ծավալվում հնգերորդ հնգամյակը ժամկետից շուտ կատարելու համար։ Բարձրացնելով մրցության դրոշը, մոսկվացիները գտնում են, որ արտադրության հետագա զարգացման և արտադրանքի թողարկման համար գլխավորը, վճռականը, աշխատանքի արտադրողականության բարձրացումն է։ Հենց այդ ճանապարհով Մոսկվայի ձեռնարկությունները հնգերորդ հնգամյակի 3 տարի 9 ամսվա ընթացքում թողարկել են մեկ միլիարդ 700 միլիոն ռուբլու արտապլանային արտադրանք։

Աշխատանքի արտադրողականության բարձրացման լայն հնարավորություններ կան նաև մեր ռեսպուբլիկայի արդյունաբերության և գյուղատնտեսության մեջ։ Այդ հնարավորությունների խելացի օգտագործմանը պետք է վերագրել այն հաջողությունը, որին հասել է Երևանի Կոմպրեսորների գործարանը, որը 1950 թվականի համեմատությամբ, այս տարի կոմպրեսորների արտադրության թողարկումն ավելացրել է 3,5 անգամ։ Արձագանքելով մոսկվացիների հայրենասիրական նախաձեռնությանը և հաշվի առնելով արտադրության ներքին հնարավորությունները, Երևանի Ձերժինսկու անվան Հաստոցաշինական, Կաբելի, Մալխտի գոր-

ծարանների, Լենինականի Մոլոտովի անվան Մանվածքային, Գուլպա-տրիկոտաժի ֆաբրիկաների կոլեկտիվները պարտավորություն են ստանձնել հնգամյակի վերջին տարում, 1950 թվականի համեմատությամբ, աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել 35—70 տոկոսով։

Աշխատանքի արտադրողականության բարձրացման մասին իր զրույցի ընթացքում ագիտատորը պետք է պատմի, թե ինչպիսի արդյունքների են հասել այդ ուղղությամբ տվյալ ձեռնարկության, բրիգադայի, ագրեգատի, հերթափոխի առաջավորները։ Կյանքից վերցրած լավ օրինակներով, կենդանի, տպավորիչ լեզվով մասսայականացնել աշխատանքի առաջավորների փորձը։

Ինչ թեմայի էլ որ վերաբերվի ագիտատորի զրույցը, նա պետք է ուղղված լինի արտադրության առաջ կանգնած հիմնական խնդրի՝ պետական պլանի կատարմանը։

---



## ԿԱՏԱՐՈՒՄ ԵՆ ՍՏԱՆՁՆԱԾ ՊԱՐՏԱՎՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

### Ա. ՄԱԼԽԱՍՅԱՆ

Ժողովրդական տնտեսության զարգացման բնագավառի խնդիրները հաջողությամբ լուծելու համար պարտիան միշտ էլ խոշոր նշանակություն է տվել սոցիալիստական մրցության հետագա ծավալմանը։ Դեռ տարեսկզբից մտնելով սոցիալիստական մրցության մեջ, Ալավերդու Քիմիական գործարանի կոլեկտիվը պարտավորություն էր ստանձնել երկրին տալ ավելի շատ և ավելի բարձրորակ արտադրանք։ Այժմ գործարանի կոլեկտիվը պատվով է կատարում ստանձնած պարտավորությունները։ Գործարանի կոլեկտիվն ընթացիկ տարվա տասն ամսվա համախառն արտադրանքի պլանը կատարել է 106,1 տոկոսով, անցած տարվա նույն ժամանակաշրջանի հետ համեմատած՝ աճը կազմում է 27 տոկոս։ Գերակատարված են նաև արտադրանքի բոլոր տեսակների արտադրության տասն ամսվա պլանները, ըստ

րում, ծծմբաթթվինը՝ 104 տոկոսով, սուպերֆոսֆատինը՝ 106 տոկոսով, պղնձարջասպինը՝ 104 տոկոսով։ Այդ նույն ժամանակամիջոցում գործարանի կոլեկտիվը աշխատանքի արտադրողականությունն, անցած տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, բարձրացրել է 18 տոկոսով, արտադրանքի ինքնարժեքը իջեցրել է ավելի քան 8 տոկոսով, արտապլանային կուտակում է տվել մոտ մեկ միլիոն ռուբլի, տնտեսել է 400.000 կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, խնայել է մեծ քանակությամբ հումք և օժանդակ այլ նյութեր։

Կոլեկտիվի ձեռք բերած հաջողությունները բնորոշող ցուցանիշներն է՛լ ավելի պերճախոս կդառնան, եթե մենք գործարանից անցնենք նրա առանձին ցեխերի ու առանձին հերթափոխությունների կողմից ստանձնած պարտավորությունների կատարման ուսումնասիրությանը։ Այսպես, օրինակ, սուպերֆոսֆատի ցեխի բանվորական կոլեկտիվն անցած 10 ամսում 15 տոկոսով ավելի շատ արտադրանք է տվել, քան անցյալ տարի։ Այժմ այդ ցեխը պլանից դուրս ամեն օր երկրին տալիս է 80—100 տոննա սուպերֆոսֆատ։

Լավ է աշխատում նաև ծծմբաթթվի ցեխի



կոլեկտիվը։ Այստեղ վերջերս շահագործման հանձնվեց նոր կառուցված աշտարակը։ Ավագ վարպետ Ս. Փերիխանյանի նորարարական առաջարկությամբ բարելավվեց գազի մատակարարումը։ Դրա շնորհիվ ծծմբաթթվի արտադրությունը ավելացավ 10 տոկոսով։ Ցեխի առաջավոր հերթափոխությունները օրվա առաջադրանքները գերակատարում են 35—40 տոկոսով։

Ցեխում սահմանված է խնայողության խիստ ռեժիմ, որի շնորհիվ տնտեսված է 120 հազար ռուբլու օժանդակ նյութ։

Ստանձնած պարտավորությունները հաջողությամբ է կատարում նաև պղնձարջասպի ցեխը, որն իր արտադրական պլանը սիստեմատիկաբար գերակատարում է 25—30 տոկոսով։ Ցեխի կոլեկտիվը ամեն օր պլանից դուրս երկրին տալիս է մի քանի տոննա արտադրանք։ Վճռականորեն բարելավվել է արտադրանքի որակը։ Սկսած ընթացիկ տարվա սկզբից մինչև այսօր տնտեսված պղնձից ստացվող օգուտը դրամական արտահայտությամբ հասնում է 160 հազար ռուբլու։ Քիմիկատների ցեխի կոլեկտիվը, որը մեծ քանակությամբ արտապլանային արտադրանք է տվել, բարձր տեսակի արտադրանքի թողարկումը պլանով նախատես-

վածից ավելացրել է 6,2 տոկոսով և տնտեսել է այնքան հումք, որի հաշվին ցեխը կարող է լրացուցիչ աշխատել 5 օր։

Գործարանի արտադրական պլանների սիստեմատիկ գերակատարումն արդյունք է այն բանի, որ այստեղ բացի աշխատանքը լավ կազմակերպելուց, լրիվ կարողությամբ օգտագործվում է նոր տեխնիկան և արտադրության մեջ լայնորեն արմատավորում են բանվորների նորարարական առաջարկությունները։ Այսպես, վերջին տասն ամիսների ընթացքում ռացիոնալիզատորական և նորարարական առաջարկությունները արտադրության մեջ արմատավորելուց հետո գործարանի տնտեսական օգուտը կազմել է 60 հազար ռուբլուց ավելի։

Գործարանում արտադրության մեջ ներդրած նորարարական և ռացիոնալիզատորական առաջարկությունները հնարավորություն են տվել այս տարի խնայելու 864 բանվորական օր, 15 տոննա կոքս, 252 տոննա քարածուխ, մոտ 6 տոննա գունավոր մետաղներ և այլն։

Խոշոր աշխատանք է կատարված աշխատատար պրոցեսները մեխանիզացիայի ենթարկելու ուղղությամբ։ Պղնձարջասպի ցեխում բյուրեղացած պղնձարջասպի տեղա-



փոխումը մեքենայացնելու շնորհիվ ցեխում աշխատանքի արտադրողականությունը բարձրացավ 43 տոկոսով։

Սուպերֆոսֆատի ցեխում ավարտվել են պատրաստի արտադրանքն ընդունող պահեստի մեքենայացման աշխատանքները, որը հնարավորություն է տվել այդ տեղամասում լիկվիդացնել պատրաստի արտադրանքըն ընդունելու և վագոնները բարձելու միջև ընկած երկարատև պարապուրդները։

Բանվորների և ինժեներա-տեխնիկական աշխատողների տեխնիկական որակավորումը բարձրացնելու նպատակով, նրանց համար սիստեմատիկաբար կազմակերպվում են զեկուցումներ ու դասախոսություններ՝ տեխնիկայի ու գիտության նվաճումների, առաջավոր փորձն արմատավորելու, խնայողության ռեժիմի և այլ հարցերի վերաբերյալ։ Վերջերս զեկուցումներ են կարդացվել՝ «Ինչպես պլանավորել ցեխի աշխատանքը և հայտնաբերել ներքին ռեզերվները», «Քիմիկատների արտադրության մեջ կիրառվող նոր տեխնիկան» և այլ թեմաների շուրջը։

Տեխնիկական գիտելիքների պրոպագանդային նպաստում է նաև գործարանի տեխնիկական գրադարանը, որտեղ ստացվում են

45 անուն զանազան ամսագրեր ու թերթեր։ Գրադարանն ունի 40 հազար կտոր գրականություն։

Գրադարանին կից կա տեխնիկական կաբինետ, ուր ցուցադրված են արտադրության տեխնոլոգիայի վերաբերյալ բազմաթիվ նյութեր, պլակատներ, նկարներ, սխեմաներ։

Աշխատանքի արտադրողականության բարձրացմանը խոշոր չափով նպաստում է նաև արտադրական քիչ փորձ և ցածր կրթություն ունեցող բանվորներին տեխնիկական, մասնագիտական կրթություն տալը։ Արդեն գործարանում մոտ 48 հոգի ընդգրկված են տեխուսուցման խմբակներում և հաջողությամբ սովորում են քիմիական արդյունաբերության բարդ տեխնիկան։

Այժմ խնդիրն այն է, որ ամրապնդվեն ձեռք բերված հաջողությունները և նպաստավոր պայմաններ ստեղծվեն նոր հաջողությունների հասնելու, երկրին ավելի շատ և ավելի բարձրորակ արտադրանք տալու համար։

---



# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. ԽՆԱՅՈՂՈՒԹՅԱՆ ՌԵԺԻՄԸ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՄԵԹՈԴՆ Է

Գրականություն

Վ. Ի. ԼԵՆԻՆ.— Մեծ նախաձեռնություն, *Երկեր, հատոր 29, էջ 501—533, Հայպետհրատ, 1951։*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Նոր իրադրություն, տնտեսական շինարարության նոր խնդիրներ, *Լենինիզմի հարցերը, էջ 422—425, Հայպետհրատ, 1940։*

Գ. Մ. ՄԱԼԵՆԿՈՎ.— Հաշվետու զեկուցում պարտիայի 19-րդ համագումարին ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի աշխատանքի մասին, *էջ 75—81, Հայպետհրատ, 1953։*

## 2. ԵՐԿՐԻՆ ՏԱՆՔ ԱՎԵԼԻ ՇԱՏ ԲԱՄԲԱԿ

Գրականություն

Միջին Ասիայի, Անդրկովկասի ռեսպուբլիկաների և Ղազախստանի բամբակագործության աշխատողների խորհրդակցության վերաբերյալ նյութեր, *տպագրված «Ս. Հ.»-ի 1954 թվականի նոյեմբերի 18, 19, 20, 21, 22-ի համարներում։*

Երկրին տանք ավելի շատ բամբակ, *«Պրավդա»-ի նոյեմբերի 22-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի նոյեմբերի 23-ի համարում։*

Բամբակի դաշտերի աշխատավորների սոցիալիստական մրցությունը, *«Պրավդա»-ի նոյեմբերի 26-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1954 թվականի նոյեմբերի 27-ի համարում։*

Բամբակագործության հետագա զարգացման հարցերին նվիրված խորհրդակցության մասնակիցների դիմումը, *տպագրված «Ս. Հ.»-ի նոյեմբերի 27-ի համարում։*

## 3. ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅՈՒՆԸ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ՊԱՇՏՊԱՆՆ Է ԱՄԲՈՂՋ ԱՇԽԱՐՀՈՒՄ

### Գրականություն

Ընկ. Մ. Զ. Սաբուրովի զեկուցումը Մոսկվայի Սովետի Հանդիսավոր նիստում 1954 թվականի նոյեմբերի 6-ին, *տպագրված «Ս. Հ.»-ի նոյեմբերի 7-ի համարում։*

Եվրոպայի խաղաղասեր ժողովուրդների անվտանգությունն ապահովելու համար, *«Պրավդա»-ի նոյեմբերի 19-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի նոյեմբերի 19-ի համարում։*

Ընկեր Վ. Մ. Մոլոտովի պատասխանները «Պրավդա»-ի թղթակցի հարցերին, *տպագրված «Ս. Հ.»-ի նոյեմբերի 23-ի համարում։*

Եվրոպայի խաղաղությունն ու անվտանգությունն



ապահովելու վերաբերյալ եվրոպական երկրների խորհրդակցության արդյունքների մասին նյութեր, *տպագրված «Ս. Հ.»-ի նոյեմբերի 30-ի, դեկտեմբերի 1-ի և հերթական մյուս համարներում։*

ՍՍՌՄ-ի, Լեհական Ժողովրդական Ռեսպուբլիկայի, Չեխոսլովակյան Ռեսպուբլիկայի, Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի, Հունգարական Ժողովրդական Ռեսպուբլիկայի, Ռումինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի, Բուլղարիայի Ժողովրդական Ռեսպուբլիկայի և Ալբանիայի Ժողովրդական Ռեսպուբլիկայի կառավարությունների Դեկլարացիան, *տպագրված «Ս. Հ.»-ի 1954 թվականի դեկտեմբերի 3-ի համարում։*

## 4. ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅՈՒՆԸ ԼԱՎԱԳՈՒՅՆ ՄԻՋՈՑ Է ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ԽՆԴԻՐՆԵՐԸ ՀԱՋՈՂՈՒԹՅԱՄԲ ԼՈՒԾԵԼՈՒ ՀԱՄԱՐ

### Գրականություն

Վ. Ի. ԼԵՆԻՆ.— Ինչպես կազմակերպել սոցիալիստական մրցությունը, *Երկեր, Հատոր 26, էջ՝ 493—506, Հայպետհրատ, 1951։*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Մրցությունը և մասսաների աշխատանքային վերելքը, *Երկեր, Հատոր 12, էջ 122—126, Հայպետհրատ, 1949։*

Գ. Մ. ՄԱԼԵՆԿՈՎ.—Հաշվետու զեկուցում պարտիայի 19-րդ համագումարին ՀամԿ(բ)Պ Կենտրոնական

Կոմիտեի աշխատանքի մասին, *էջ 81—83, Հայպետհրատ, 1953*։

Ավելի լայնորեն ծավալել մրցությունը հինգերորդ հնգամյակը ժամկետից շուտ կատարելու համար, *«Պրավդա»-ի առաջնորդող հոդվածը, տպագրված «Ս. Հ.»-ի նոյեմբերի 11-ի համարում*։

Մոսկվա քաղաքի ձեռնարկությունների սոցիալիստական մրցությունը հինգերորդ հնգամյա պլանը ժամկետից շուտ կատարելու համար, *տպագրված «Ս. Հ.»-ի 1954 թվականի նոյեմբերի 11-ի համարում*։

## 5. ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՄԵՋ ԱՐՄԱՏԱՎՈՐԵՆՔ ԳԻՏՈՒԹՅԱՆ ՆՎԱՃՈՒՄՆԵՐԸ ԵՎ ԱՌԱՋԱՎՈՐ ՓՈՐՁԸ

### Գրականություն

Գ. Մ. ՄԱԼԵՆԿՈՎ.— Հաշվետու զեկուցում պարտիայի 19-րդ համագումարին ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի աշխատանքի մասին, *էջ 56—72, Հայպետհրատ, 1953*։

ՍՍՌՄ գյուղատնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի որոշումը՝ *ընդունված 1953 թ. սեպտեմբերի 7-ին ընկ. Ն. Ս. Խրուշչևի զեկուցման առթիվ, Հայպետհրատ, 1953*։

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ.— ՍՍՌՄ Գյուղատնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին, *զեկուցում ՍՄԿՊ Կենտկոմի պլենումում, 1953 թ. սեպտեմբերի 3-ին*։



Ս. Հ. ԹՈՎՄԱՍՅԱՆ.— Հաշվետու զեկուցում Հայաստանի Կոմպարտիայի 17-րդ համագումարին ՀԿՊ Կենտկոմի աշխատանքի մասին, *էջ 56—59, Հայպետհրատ, 1954*։

## 6. ԺԱՄԱՆԱԿԻՆ ԱՎԱՐՏԵՆՔ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ՄԵՔԵՆԱՆԵՐԻ ԱՇՆԱՆ-ՁՄԵՌԱՅԻՆ ՆՈՐՈԳՈՒՄՆԵՐԸ

### Գրականություն

ՍՍՌՄ գյուղատնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի որոշումը՝ *ընդունված 1953 թ. սեպտեմբերի 7-ին ընկ. Ն. Ս. Խրուշչևի զեկուցման առթիվ, Հայպետհրատ, 1953*։

ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի որոշումները մեքենա-տրակտորային կայանների աշխատանքի հետագա բարելավման միջոցառումների մասին, *առանձին բրոշյուր, էջ 104—136, Հայպետհրատ, 1953*։

Գյուղատնտեսական մեքենաների աշնան-ձմեռային նորոգումները, *«Ս. Հ.»-ի առաջնորդող հոդվածը, տպագրված 1954 թվականի նոյեմբերի 17-ի համարում*։

---

Խտ. խմբագիր՝ Վ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ



Отдел Пропаганды и агитации
ЦК КП Армении
БЛОКНОТ АГИТАТОРА
№ 23 1954 г.

*ՎՖ 13971 Պատվեր 995 Տիրաժ 7950*

*Հայպոլիգրաֆհրատի № 2 տպարան, Երևան Կնունյանցի № 8, 1954 թ., գինը 50 կոպ.։*